ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 6 1962

ԼԵՎՈՆ ԽԱՉԻԿՅԱՆ

# ԵՐԶՆԿԱ ՔԱՂԱՔԻ «ԵՂԲԱՐՑ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ» ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ (1280 Թ.)

*Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հասարակական գիտությունների բաժանմունքի «Տեղեկագրի» 1951 թ. № 12-ում տողերիս գրողը հրատարակել էր մի հաղորդում, նվիրված 1280 թվականին Երզնկայում կազմակերպված Եղբայրությանը և նորաստեղծ այդ կազմակերպության համար Հովհաննես Երզնկացու (մհ. 1293 թ.) գրած «Սահման և կանոնք»-ին։*

*Շատ ժամանակ չի անցել այդ հաղորդման հրատարակումից, բայց այն մտել է արդեն գիտական լայն շրջանառության մեջ. Երզնկայի Եղբայրության «Սահման և կանոնքը» իրավացիորեն համարվել է կարևոր մի սկզբնաղբյուր, որը լույս է սփռում միջնադարյան հայկական քաղաքների ներքին կյանքի վրա, հանդիսանալով համքարությունների գոյությունը հավաստող ամենաուշագրավ փաստաթղթերից մեկը։ «Սահման և կանոնքը» հնարավորություն է ընձեռել միաժամանակ նոր տեսանկյունից քննարկելու միջնադարյան նշանավոր բանաստեղծներ Հովհաննես և Կոստանդին Երզնկացիների ստեղծագործությունները, բացահայտելով դրանց կապը քաղաքային բնակչության՝ առևտրականների և արհեստավորների և, մասնավորապես, եղբայրությունների մեջ ընդգրկված ամուրի երիտասարդների հետ։*

*Սրանով, սակայն, չի սպառվում Երզնկայի Եղբայրության «Սահման և կանոնքի» նշանակությունը. այսուհետև ևս այն գրավելու է սևեռուն ուշադրություն, որպես միջնադարյան հայկական քաղաքներում ստեղծված եղբայրությունների մասին եզակի ու բովանդակալից սկզբնաղբյուր։*

*Նկատի ունենալով այդ հանգամանքը լույս ենք ընծայում Երզնկայի Եղբայրության կանոնադրությունը՝ Մատենադարանի այդ բնագիրը պարունակող երեք ձեռագրերի բաղդատությամբ։*

*Հակիրճ այս ներածականում, վերաշարադրելով «Տեղեկագրի» 1951 թ. № 12-ում տպագրված մեր հաղորդման հիմնական եզրակացությունները, միաժամանակ, նոր նյութերի հիման վրա, կատարում ենք որոշ լրացումներ։*

* * *

*1280 թվականին Երզնկայում կազմակերպված Եղբայրության մեջ միավորվել են քաղաքի առևտրական և արհեստավորական շերտերին պատկանող ամուրի երիտասարդները։ Նրանց նպատակն է եղել միացյալ ջանքերով դիմագրավել «բռնավորաց» և «չար մարդկանց», օգնել անտեսապես քայքայված ընկերոջը, զորավիգ լինել միմյանց տնտեսական ու հասարակական կյանքի տարբեր բնագավառներում։*

Եղբայրությունն ունեցել է մարտական կազմակերպություն. սկզբնական շրջանում միավորվել են տասը անդամներ՝ տասնապետի («տասին գլուխն») հրամանի ներքո. 4 այդպիսի օղակներից կազմվել է Եղբայրության հաջորդ բջիջը՝ «քառասունին մեծի» գլխավորությամբ: Կազմակերպության գործերը տնօրինել է «գլխաւոր եղբարք» կոչված մարմինը, «գլուխ եղբայրութեանն» անվանյալ պաշտոնյայի նախագահությամբ:

Եղբայրության մեջ եղել են «աւագ» և «կրտսեր» անդամներ: Ըստ որում կրտսերը պարտավոր է եղել հնազանդվել ավագ եղբորը, իսկ վերջինս՝ քաղցրությամբ վարվել ու խրատել կրտսերին:

Եղբայրության անդամները պարտավորվել են խստագույնս հետևել կանոնադրության հրահանգներին. հանցապարտները վտարվել են եղբայրությունից:

Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մի աշխարհաբար հատվածը[1], ինչպես և այլ փաստեր, հնարավորություն են տվել պարզելու, որ ցարդ սխալ մեկնաբանված «մանկտաւագ» (նաև «մանկտասար», «մանգասար») միջնադարյան տերմինը սերտորեն աղերսվում է Երզնկայի Եղբայրությանը հար և նման կազմակերպությունների հետ, ուստի և նման կազմակերպություններ եղած պետք է լինեն հայկական կամ հայաբնակ բոլոր այն քաղաքներում, որոնցում տարբեր առիթներով հիշատակվել են մանկտավագ կոչված պաշտոնյաներ:

Վերահիշյալ մեր հաղորդման մեջ, հենվելով կողմնակի որոշ փաստերի վրա, եզրակացրել էինք, որ Երզնկայից բացի եղբայրությունների գոյությունը հավաստվում է նաև Անիում և Վանում: Ձեռքի տակ ունենալով մանկտավագ կոչումը կրող անձանց մասին վկայություններ պարունակող հիշատակարաններ՝ նույն կարծիքն էինք հայտնել նաև Սուլթանիայի (Իրան) և Կաֆայի (Ղրիմ) մասին, որոնց բնակչության մի զգալի մասը հայեր էին[2]:

Այժմ կարող ենք ավելացնել, որ մանկտավագ, ուստի և Եղբայրություն է եղել նաև Կարին քաղաքում: 1283 թվականին, Կարինի գավառի Կոն գյուղում ընդօրինակված մի ձեռագրի հիշատակարանում՝ կան այսպիսի տողեր. «Ես տէր (Աւագս) ստացայ զսուրբ Աւետարանս... յիշատակ ծնաւղաց իմոց, և ամենայն նախնեաց, հաւրն իմոյ մանկտաւագ Մերշերոյն և մաւրն իմոյ Մինաթերին»[3]:

Ավելի առատ են տեղեկությունները երիտասարդ ու ամուրի հայ երիտասարդների ուկրաինահայ և լեհահայ գաղթավայրերում ստեղծված կազմակերպությունների մասին: Այս առումով մեծ հետաքրքրություն է ներկայացնում Վիեննայի Մխիթարյանների մատենադարանի № 453 ձեռագիրը, որի էջերում ընդօրինակված է Յազլովեց քաղաքի «Կարիճվորաց եղբայրութեան» կանոնադրությունը (վերահաստատվել է 1658 թվականի փետրվարի 10-ին, տխրահռչակ Նիկոլ արքեպիսկոպոս Թորոսովիչի կողմից): Այն, իր ամբողջությամբ, դեռ չի հրատարակված. բայց նույնիսկ Հ. Տաշյանի ցուցակում մեջ բերված

---

1 Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 226:

2 Սուլթանիայում հիշատակվում է Հովհաննես մանկտավագը՝ 1329 թ. և Ներսես մանկտավագը՝ 1357 թ., իսկ Կաֆայում՝ Կազար մանկտավագը՝ 1334 թ. (տե՛ս Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 217, 265, 426):

3 Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատոր առաջին, Վենետիկ, 1914, էջ 645:

բաղկածքները[4] հնարավորություն են տալիս ընդհանրություն որոշ կետեր նշմարել Երզնկայի և Յազլովեցի եղբայրությունների միջև։

Յազլովեցի Եղբայրության ղեկավարությունը կենտրոնացված է եղել կարիճների (իմա «երիտասարդ ամուրիների») «վոյվոդայ» (воевода) և «ստարոստայ» (староста) կոչվող պաշտոնյաների ձեռքում։ 1646 թվականին վոյեվոդա է եղել վոյթ Կարապետի որդի Սիմեոնը, իսկ ստարոստա՝ պան Էսեր-պեկի որդի Խոջաբը, այլ խոսքով՝ հայկական համայնքի ամենաազդեցիկ և ունևոր անձանց որդիների ձեռքին է եղել Եղբայրության ղեկավարությունը։

Կանոնադրությունը բաղկացած է 31 արտիկուլներից, որոնք շոշափում են Կարիճվորաց եղբայրության ներքին կազմակերպությանը և անդամների փոխադարձ պարտավորություններին ու իրավունքներին վերաբերող բազմապիսի հարցեր։

Ուշադրավ է նաև 1690 թ. Եղիազար կաթողիկոսի կողմից հաստատված, իսկ այնուհետև՝ 1790 թ. Հովսեփ արքեպիսկոպոս Արղության վերահաստատված Պատուշան, Յաշ և Ռոմանի քաղաքների «Կարիճվորաց եղբայրության» կանոնադրությունը[5]։

Կամենեց-Պոդոլսկ քաղաքի Կարիճվորաց եղբայրության մասին մեզ հայտնի վկայությունը 1522 թվականից է։ Քաղաքի հայկական եկեղեցիներից մեկի նվիրաբերությունների մատյանում, այդ թվականի տակ գրանցված է հետևյալը. «Զմիաբան կարիճներն նկարել տուան զկէս եկեղեցին՝ հանդերձ բոլորովին պատկերքներով»[6]։ Նիկոլ Թորոսովիչի արքեպիսկոպոսության տարիներին (1626—1681) ստեղծվել է նաև Ստանիսլավի «Կարիճվորաց եղբայրությունը»[7]։

Եղբայրություններ, անշուշտ, եղել են նաև Ուկրաինայի, Լեհաստանի, Մոլդավիայի, Ռումինիայի և Հունգարիայի հայաբնակ մյուս քաղաքներում, որոնցից մի քանիսի մասին պահպանվել են արխիվային արժեքավոր փաստաթղթեր։ Դժբախտաբար դրանք դեռևս հրապարակված չեն, ուստի վաղաժամ է որևէ խոսք ասել այն մասին, թե որքանով են մայր հայրենիքից կտրված ու հեռավոր այդ երկրների հայաշատ քաղաքներում ստեղծված Եղբայրությունները ծագումնաբանորեն կապված բուն Հայաստանի նույնատիպ կազմակերպությունների հետ։

Սակայն, եթե նկատի առնենք այն հանգամանքը, որ վերոհիշյալ երկրների քաղաքային կյանքի, առևտրի և արհեստագործության զարգացման գործում հայ գաղթականները նշանակալից դեր են կատարել և հարյուրամյակներ շարունակ համառորեն ձգտել են իրենց համայնքների ներքին կյանքը կազմակերպել հայրենի երկրի ավանդական սկզբունքներով, կարելի է թերևս եզրակացնել, որ քաղաքաբնակ երիտասարդների եղբայրությունները ևս այդ գաղթավայրերում ստեղծվել են ոչ թե տեղական ժողովուրդների համանման կազմակերպությունների, այլ միջնադարյան Հայաստանի քաղաքների օրինակով։

---

[4] Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, 1895, էջ 923—924։

[5] Տե՛ս «Արարատ» ամսագիր, 1889 թ., էջ 387—405։

[6] Մ. Բժշկյան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, Վենետիկ, 1830, էջ 149։

[7] Ղ. Ալիշան, Կամենից, տարեգիրք Հայոց Լեհաստանի և Ռումենիոյ, հաւաքեալ յանյատծոյք, Վենետիկ, 1896, էջ 129։ Տես նաև Լ. Խաչիկյան, Հայկական գաղթավայրերը Ուկրաինայում XVI—XVII դարերում («Տեղեկագիր», 1954 թ., № 4, էջ 53—54)։

Հրապարակելով Երզնկայի եղբայրության «Սահման և կանոնքը», հույս ենք հայտնում, որ այս հարցը հատուկ քննության առարկա կդառնա ուկրաինահայ և լեհահայ գաղութների պատմությամբ զբաղվող մասնագետների կողմից և կստանա իր բավարար պատասխանը։ Եվ եթե պարզվի, որ Հայաստանից դուրս գտնվող հայաբնակ քաղաքների Կտրիճվորաց եղբայրությունների հիմքում ընկած են հայրենական ավանդությունները, ապա մենք հնարավորություն կունենանք միջնադարյան Հայաստանի քաղաքային կյանքի աղոտ պատկերը լուսավորելու համար, այս կամ այն չափով օգտվել նաև Ուկրաինայի և Լեհաստանի հայաբնակ քաղաքների մասին պահպանված հայերեն, հայատառ-ղփչաղերեն և լեհերեն արխիվային առատ նյութերից։

«Տեղեկագրում» տպագրված վերոհիշյալ մեր հաղորդման մեջ մատնանշել էինք, որ հայկական քաղաքների եղբայրությունները ընդհանուր շատ բան են ունեցել փոքրասիական քաղաքներում XIII դարում առաջացած «Ախի» («Եղբայրություն») կոչվող կազմակերպությունների հետ։

Արաբ նշանավոր ճանապարհորդ Իբն-Բատուտան, որ 1332 թվականին շրջում էր Փոքր Ասիայում, հաճախ հյուրընկալվել է «ախիների» կողմից և ծանոթացել, մասնավորապես, Երզնկայի «ախիների» կազմակերպությանը, ուշագրավ տվյալներ է հաղորդել կազմակերպության անդամների միմյանց նկատմամբ ունեցած պարտավորությունների, նրանց հավաքույթների ու խնճույքների և դավանած գաղափարների մասին։ Ախիները,— ըստ Իբն-Բատուտայի,— կանգնած էին ազատության պաշտպանության դիրքերում, պայքարում էին բռնապետների ու նրանց կամակատարների դեմ, տառապյալներին ու չքավորներին օգնելը մտնում էր նրանց սրբազան պարտականությունների մեջ և այլն։

Նույն սկզբունքների վրա են խարսխված եղել նաև հայկական եղբայրությունների գաղափարական ու կազմակերպչական հիմքերը։ Երզնկայի եղբայրության մեջ միաբանվածները առաջնորդված են եղել հարևան ժողովուրդների հետ հաշտ ու խաղաղ ապրելու և գործակցելու ջերմ ձգտմամբ։ «Սահման և կանոնքի» մեջ կան ուշագրավ այսպիսի տողեր. «Եւ խաղաղասէրք լինին եղբարքս մեր ի մէջ աշխարհի, ընդ ամենայն ազգ մարդկան սիրով անցուցանել և զկել, որ յամենայն ազգէ իմաստունք լիցին, մեծարեսցին և յիմաստութենէն շահեսցին՝ առանց հակառակութեան»։

Հայրենի քաղաքից դուրս, առևտրական կարավանների հետ երթևեկելիս եղբայրությունների զենքի տակ ու զինավառ անդամները («մանկտիք», «կտրիճվորայք»), մանկտավագի հրամանատարությամբ՝ պաշտպան էին կանգնում իրենց կյանքին ու գույքին, թշնամական հարձակումների ժամանակ նրանք, անտարակույս, մասնակցում էին հայրենի քաղաքի պաշտպանողական մարտերին, իսկ խաղաղ պայմաններում, նույն այդ երիտասարդները, խմբվում էին խնճույքների, գիշերներ լուսացնում գինարբությամբ, ունկնդրում իրենց սիրելի բանաստեղծների և գուսանների հորինած սիրո և ուրախության երգերը, լսում ժողովրդական առասպելների «քաջաց զրոյց»-ները, որոնք սովորեցնում էին «զօրաւոր մանուկ և յաղթող լինել», և զվարճանում էին հեզաճկուն վարձակների ու մորճերի պարերը դիտելով, երգերը ըմբոշխնելով։

Մեր հաղորդման մեջ ցույց էինք տվել Կոստանդին Երզնկացու սերտ կապն ու մտերմությունը Երզնկայի եղբայրության անդամների հետ։ Կոստանդինը

իր լավագույն սիրո տաղերից մեկը գրել է հենց երզնկացի եղբայրների պատվերով, որոնց մասին ակնարկել է առաջին բերված քառյակի մեջ.

Եղբարք մի կան հետ մեզ սիրով,
Աշխարհի բան ուղեն զրով,
Նայ ես վասն այն յայտնի ձայնով,
Սիրու բաներս ասցի յոլով[8]:

Հովհաննես Երզնկացու մտերիմներից է եղել իր հայրենակից Հակոբ մանկտավագը, մի անձնավորություն, որը, հավանաբար, մեկն էր Երզնկայի Եղբայրության ղեկավար մանկտավագներից: Սրա խնդրանքով է հորինել Հովհաննեսն իր արժեքավոր ստեղծագործություններից մեկը, որն ունի «Յակո՛բ, պարթիր ի քնոյ մեղաց» վերնագրությունը[9]:

Բանաստեղծության մեջ կան մի քանի ակնարկներ պատվիրատուի մասին. նրա երեսուն տարին նոր է լրացել, եղել է «աղօթից ծոյլ», եկեղեցի չհաճախող ու պահք չպահող մի երիտասարդ: Իրավացի է Ա. Սրապյանը, ենթադրելով, թե այս Հակոբ մանկտավագն է հենց հիշված Մխիթար Այրարանեցու կողմից, որպես մեկը, որն ուրացել է սուրբ երրորդությունը և «հանապազորդ յաղօթս իւր» ասել, թե «ինքն է հայր, ինքն որդի և ինքն հոգին սուրբ»[10]:

Միջնադարյան հայ գուսանական քնարերգության գլուխ-գործոց հայրենների մի զգալի մասը ևս հորինված է քաղաքացիական ամուրի երիտասարդների պատվերով ու նրանց խնձույքներում երգվելու համար:

Հայրեններից մեկի անծանոթ երգիչը իր խոսքն ուղղակի հասցեագրում է խնձույքի սեղանին բոլորած «մանուկներին»՝ այսպես.

Գիշերս ես ի քուն էի,
Քունս ի ներս սրտիկս երեցաւ.
Եկին ու բերին խապար.
«Քո սիրած եարն գրեզ մտացաւ»:
— Մանկտիք, ձեր արեւդ ասեմ.
Լսեցի, լեզուս կապեցաւ[11]:

Ծանոթանանք նաև մի ուրիշ հայրենի.

Գիշերս ես ի դուրս ելայ,
Քիչ մի լուրջ ու քիչ մի գինով.
Իմ եարն ինձ դէմ գիպաւ,
Մազն իւր կարմիր խնձորով.
Ձեռս տարայ, այն առի,
Նա կանչեց. «տարաւ ճըղներով»:

[8] Կոստանդին Երզնկացի, ԺԴ դարու ժողովրդական բանաստեղծ և իւր քերթուածները, հրտ. Մ. Պոտուրյան, Վենետիկ, 1905, էջ 161:

[9] Արմենուհի Սրապյան, Հովհաննես Երզնկացի, Երևան, 1958, էջ 172:

[10] Ղ. Ալիշան, Հայապատում, Բ, Վենետիկ, 1901, էջ 552:

[11] Մ. Աբեղյան, Գուսանական ժողովրդական տաղեր, Երևան, 1940, էջ 12:

— Մանկտի՛ք, ձեր արեն ասեմ,
Կամ չառի ես իմէն ճորով[12]:

Եվս մեկ օրինակ.

... Յանչափ ջանացի իր հետն,
Որ իրմէն պագնել մի առի,
Ի քաղցրութենէն, եղբայրք,
Բանէր է սրտիկս, որ կայրի...[13]:

Սրանցով չեն սահմանափակվում այն հայրենները, որոնցում երգիչ-դուսանը դիմում է իր ունկնդիրներին, կոչելով նրանց մեզ ծանոթ և քաղաքաբնակ ամուրիների կազմակերպությունների հետ սերտ աղերսի մեջ եղող՝ «մանկտի», «եղբայր», նաև «կարիճ» տերմիններով[14]:

Սակայն կարևորն այդ կոչումները չեն, այլ այն, որ հայրենների մեծագույն մասը հորինված է հենց քաղաքային առևտրական ու արհեստավորական շերտերի կյանքին ու գործունեությանը բնորոշ պատկերներով ու միջադեպերով. նրանց նիստ ու կացը, շահի ետևից՝ աշխարհից-աշխարհ թափառելը, «բաժգող անցնելը» (այսինքն՝ մաքսանենգությունը), արվեստակիցների («հաքիֆների») հետ սեղան նստելն ու գինարբուքով զվարճանալը և կյանքի այլ բնորոշ կողմերը արտացոլվել են հայրեններում գեղարվեստական մեծ ընդհանրացումներով: Շատ հաճախ մեր դուսանները հենց նրանց տեսանկյունով են դիտել աշխարհն ու գնահատել մարդկային ու հասարակական հարաբերությունները:

Բերենք մի բնորոշ օրինակ: 1371 թվականին շարադրված ձեռագիր մի աշխատության անհայտ հեղինակը ողբացել է հայ եկեղեցու անմխիթար վիճակը, ժողովրդի (հատկապես՝ երիտասարդության) խորթացումը եկեղեցուց և այլն: «Իսկ ժողովրդականք,—գրել է նա,—ամայիք և թափառականք, կորացեալ մտաւք, մոլորեալ ի գիտութենէ. զխոստովանութիւն ոչ գիտեն, ... յեկեղեցի ոչ դիմեն, ... զաղօթս և զարտասուս ոչ ճանաչեն, ... ի պատարագ ոչ փափագին» և այլն: «Լուա յումեմնէ,—շարունակում է նա,—զի պատմէր զմարդոյ, վկայեալ ի հարազատ եղբարէ իւրմէ, զի հնգետասանամեա գոլով և դեռ պատարագն չէր տեսեալ յեկեղեցւոջ. և զայլ ումեմնէ, թէ Ժ (10) ամ աւելի ես էր, որ մարմնոյ և արեան տեառն չէր հաղորդել»[15]:

Տասնհինգամյա այդ պատանին, որ իր կյանքում դեռ եկեղեցի չէր մտել ու պատարագ չէր տեսել, կամ նրա ապրեկիցը, որ 10 տարուց ավելի հաղորդություն չէր ընդունել, անտարակույս, պատկանում էին քաղաքաբնակ այն երիտասարդների թվին, որոնք ունկնդրում և սիրով արտասանում էին հանրածանոթ այն հայրենը, ուր ասված է.

Քանի մարդն զիս բերեր,
Քահանի չեմ խոստովաներ.

---

12 Մ. Աբեղյան, Գուսանական ժողովրդական տաղեր, Երևան, 1940, էջ 163:
13 Նույն տեղում, էջ 179:
14 Տես նաև նույն տեղում, էջ 146, 147 և այլն:
15 Մատենադարան, ձեռ. № 581, էջ 255բ, 256բ:

*Ուրտեղ քահանայ տեսեր,*
*Նայ ծռեր համփուս ու եկեր.*
*Ուրտեղ մէկ աղւոր տեսեր,*
*Գիրկ ու ծոց 'ւ ի դէմ գնացեր...*[16]։

*Միջնադարյան հայ քնարերգության լավագույն այս էջերի առեղծվածային միջավայրի ու տարածման ոլորտների մասին մեր գիտելիքները անշուշտ հարստանում են այն բանից հետո, երբ տեղյակ ենք դառնում հայկական քաղաքներում ստեղծված ամուրի երիտասարդների եղբայրությունների գոյությանը և խորամուխ լինում նրանց անդամների գործունեության և նիստ ու կացի մանրամասնություններին։*

---

*«Սահման և կանոնքի» բնագիրը հրատարակում ենք Մատենադարանի ստորև նշված երեք ձեռագրերի բաղդատությամբ.*

A — № 2329, *Ժողովածու, 1291 թ., էջ 287բ—295ա։*

B — № 652, *Կանոնգիրք, XV—XVI դդ., էջ 70բ—75բ։*

C — № 2173, *Ժողովածու Հովհաննես Երզնկացու քարոզների և մեկնությունների, ԺԴ դար, էջ 257—260բ (վերջից թերի)։*

* * *

Սահման և կանոն միաբանութեան եղբարց[1], որ աստուածային սիրովն միաբանեցան յեղբայրութիւն միմեանց ի մայրաքաղաքս, որ կոչի Եզնկայ[2], ի թուիս՝ ՉԻԹ. (1280). Ըստ հանդիպելով և ձեռամբ[3] վարդապետին Գրիգոր[4] Սանահնեցի, որ և գրեցաւ ի գլուխ եղբայրութեանս[5]. և ես՝ նուաստ վարդապետ[6] Յովհաննէս Եզնկացի[7] գրեցի զսահման և զխրատ եղբայրութեանս եւ զշահաւէտ ազգաւն[8] որ ի սմանէ, առաջնորդութեամբ սուրբ հոգւոյն.

*Բանն ասացեալ, որ բանիւ գոյացոյց զամենայն արարածս և զբանն իւրական հոգի կոչեաց և կեանք՝ բանին[9] իմաստութեամբ զարդարեաց զհոգիս մեր, զի որպէս հոգիւ կերակրի մարմին, այսպէս բանիւ հաստատի հոգի։*

*Արդ, հոգիացուցիչ բանն Քրիստոսի ասացեալ, զմեզ[10], զի երկու են դուռն և ճանապարհ վարուց մարդկան, զոր ընտրեն[11] և գնան ճանապարհորդք կենցաղոյս։ Նեղ է դուռն և անձուկ է[12] ճանապարհն, որ տանի ի կեանսն և սակաւք են, որք մտանեն ընդ նա[13]. լայն է և ընդարձակ է ճանապարհն, որ տանի ի կորուստն, և բազումք գնան[14] ընդ նա։*

*Արդ, նեղ և անձուկ ճանապարհ՝ զառաքինութիւնն ասէ և զբարեգործութիւնն, որ հեշտասէրքն և մեղաւք մոլորեալքն ոչ կարեն գնալ. և սակաւք են յաշխարհի, որք յաւժարական սիրով գնան ընդ նա, իսկ լայն և ընդարձակ ճանապարհ՝ զմեղացն ասէ և զչար գործոցն[15], զոր մեղասէրք[16] և աշխարհասէր մարդիկ սիրեն և յաւժարին գնալ ընդ նա։ Արդ, այս երկու ճանապարհս*

---

16 Մ. Աբեղյան, *Գուսանական ժողովրդական տաղեր*, էջ 145։

1 B *եղբարցս*։ 2 AB *մեծ* փխ *որ կոչի յԵզնկայս*։ 3 AB *ի թվ*։ 4 B *Գրիգոր* չիք։ 5 B *միաբանութեան եղբայրութեան գլուխ* փխ *ի գլուխ եղբայրութեանս*։ 6 C *վարդապետս*։ 7 C *Յոհաննէս*, A *Եզնկեցի*, B *Յոհանէս Երզնկացի*։ 8 B *և ազգաւն*։ 9 AB *բանիւն*։ 10 A *մեզ*։ 11 A *ընդրեն*։ 12 AB *է* չիք։ 13 B *այն* փխ *նա*։ 14 B *մտանեն* փխ *գնան*։ 15 A *զչարագործոցն*։ 16 A *մեղասէրքն*։

երկու առաջնորդ են, որ կոչեն զմարդիկ գնալ զհետ[17] իւրեանց: Բարի ճանապարհին՝ առաջնորդ է Հոգին սուրբ, զոր և մարգարէն Դաւիթ հայցէ՝ «Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր[18] ուղիղ»: Եւ չար ճանապարհին առաջնորդ[19] սատանայ է, զոր վէմն հաւատոյ Պետրոս ասէ՝ «Ոսոխն ձեր սատանա իբրև զառիւծ գոչէ և խնդրէ թէ զոյ[20] կլանէ»:

Արդ, եղիցի եղբայրութեանս[21] մեր Հոգին[22] սուրբ առաջնորդ, հանդերձ Հարբ և միածնի որդովն[23], և առաջնորդեսցէ մեզ յերկիր ուղիղ՝ բարի ճանապարհաւն ընդ արքունի պողոտայն, առանց խոտորելոյ յաջ կամ յահեակ[24], զի մի ի գինուցն երկոցունց խոցոտեսցուք. այլ իբրև ի վերայ կամրջի[25] գնասցուք ընդ մէջն գնալով մի վերոյ կամ ներքոյ գետավէժ լիցուք: Եւ զի ժողովատեղ է բնութիւն մարդոյս և ընդունակ չարի և բարոյ[26] ըստ նմանութեան օդոյս, զի զորաւորինակ օդ ի ծագել արեգականն լուսաւորի և ի գալ գիշերոյն՝ խաւարի, այսպէս և մարդ, եթէ զաստուածային բանն և զհոգևոր խրատն և զլոյս պատուիրանացն աստուծոյ առնու ի միտ՝ լուսաւորի և պայծառանայ, և թէ[27] սատանայի ազդմանցն և մեղաց խրատուն լինի ընդունակ՝ նսեմանայ[28] և խաւարի: Եւ զորաւորինակ հող երկրի, զոր ինչ սերմանէ մարդ՝[29] զայն բուսուցանէ. այսպէս և հոգեղէն բնութիւն մարդոյս, զոր ինչ սերմանեն՝ զայն պտղաբերէ[30], եթէ փուշ՝ մեղաց և եթէ ծաղիկ՝ առաքինութեան: Արդ, լոյս պատուիրանացն աստուծոյ լուսաւոր լիցի յոգի եղբայրութեանս և ծաղիկք[31] ամենայն բարութեանց բուսցին ի բնութիւն սոցա:

Բայց արժան է գիտել, եթէ քանի տեսակք են եղբայրութեանն[32]:

Առաջինն այս է. զի ի միոյ բնութենէ տարերացս միոյ արարչին[33] ստեղծուածքն[34] եղբայր ասին. և այս հասարակաց է՝ բանականաց և անբանից, կենդանեաց և անկենդանեաց:

Իսկ երկրորդ եղբայրութիւն այն է, որ ի միոջէ ծնողաց[35] ծնեալ լինին. և այս սակաւաւոր է:

Իսկ երրորդ եղբայրութիւն, որ և ճշմարտին է և հոգևորն, այն է, որ ի հոգւոյն աստուծոյ ծնեալքն և ի մի աւազան մկրտեալքն եղբարք ասին միմեանց և Քրիստոսի, և[36] երկնաւոր հաւրն որդիք, և արքայութեանն ժառանգաւորք[37], և [38] Քրիստոսի ժառանգակիցք. և այս յատուկ[39] քրիստոնէից է պարգևեալ շնորհք, որք[40] անուամբն Քրիստոսի կոչին:

Այլ դուք ի վերայ այսոցիկ չորրորդ տեսակ եղբայրութեան հաստատեցէք ի միջի ձերում, որ զրովն է և կանոնական[41] սահմանաւք, և բարեկէց ժողովմամբ, և ընկերակցութեամբ, և միաբանութեամբ, և միով[42] հաւատով և սիրով, և երկնաւոր ցանկութեամբ: Եւ ոչ եթէ նոր է այս, այլ զոր քրիստոնէից[43] վայել է գործ՝ զայն ուսուցանէ:

Եւ քաղցր է այս եղբայրութեան սահման, զի որպէս բազմութիւն աստեղաց զերկինս զարդարեն, այսպէս և բազմութիւն եղբարց սիրով[44] ժողովելոց՝ զեկեղեցի պայծառացուցանեն: Եւ որպէս բազմութիւն զաւրաց թագաւորական զինուորաց միաբանելոց դիւրաւ յաղթեն թշնամեացն, այնպէս եղբարցն բազ-

---

[17] B ի հետ: [18] C ի յերկիր: [19] B առաջնորդն: [20] B զով, C զո: [21] B եղբայրութիւնս փխ եղիցի եղբայրութեանս: [22] AB հոգի: [23] B որդւովն: [24] A յահէկ: [25] B կամրջովք: [26] B բարոյ և չարի: [27] AB եթէ: [28] B և նսեմանայ: [29] AB որ փխ մարդ: [30] B պտղաբերի: [31] AB ծաղիկ: [32] B եղբայրութեանս: [33] AB արարչի: [34] B ստեղծուածք: [35] AB ծնուղաց: [36] B և չիք: [37] AB ժառանգաւորք: [38] B և չիք: [39] C յատուկ չիք: [40] B որ, C որ չիք: [41] C կանոնական: [42] B միով չիք, [43] C քրիստոնէից: [44] C սիրով չիք:

մութիւն քաջ հաւատով և հաստատ սրտիւ՝ զինու յաղթեն սատանայի, և մեղսասէր դիւացն, և չար մարդկան, որք[45] չարժեն ի սատանայէ:

Եւ արդ, գիտէք զսահման մերոյ եղբայրութեանս, որ[46] են երեք սեռական գլուխք. առաջին[47], եթէ ամենայն որ իւր անձամբն որպէ՞ս քաղաքավարի. երկրորդ, թէ զի՞նչ աւգտութիւն և շահ արասցեն միմեանց այս միաբանեալ եղբարքս և ո՞ր է պտուղ միաբանութեան սոցա. երրորդ, թէ որպէ՞ս ի հասարակաց կենցաղոյս ի մէջ աշխարհի և ի մէջ բազում ազգաց իմաստութեամբ գնասցեն ի շինութիւն տեսողացն և ի փառս անուանն Քրիստոսի:

Եւ արդ, առաջինն, զոր ասացաք[48], զոր պարտ է ամենայն ումէք իւր անձինն սահմանել. զի զորաւրինակ արեգակն հասարակաց ծագէ, բայց ում տեսանելիքն առողջ են՝ նա լուսաւորի, այսպէս և աստուածային[49] աւրէնքն[50] հասարակաց է ամենայն աշխարհի, այլ որ սիրէ և գործէ՝ նայ է արժանաւոր և աստուածային լուսոյն պայծառացեալ:

Լուսաւոր երիտասարդք և աղահասակ[51] մանկունք[52], որք միաբանէք[53]

ա. յեղբայրութիւնս: Այս ձեզ առաջին աւրէնք՝ սիրեցէք զաստուած զարարիչն ձեր և վասն սիրոյ նորա արհամարհեցէք զամենայն սէր աշխարհիս:

բ. Երկրորդ. պատուեցէք զծնողսն[54] ձեր՝ զհայր և զմայր, որ հետ[55] աստուծոյ պատճառ են ձեր[56] ստեղծմանն, և ծերութեան[57] նոցա խնամ տարէք, և հրամանացն հնազանդ լերուք. զի աւրհնութեան նոցա արժանի լիջիք[58]:

գ. Երրորդ. պատուեցէք զքահանայսն աստուծոյ իբրև զհոգևոր ծնողն[59]. և ձեր քահանային[60], որոյ ժողովուրդ էք, խոստովանեցէք, և ի վաստակոց և յաշխատութեանց ձերոց տուք նոցա պտուղ, որպէս զի[61] աղաւթք նոցա, որ վասն ձեր մատուցանեն աստուծոյ՝ ընդունելի լիցի:

դ. Չորրորդ. սուրբ պահեցէք զանձինս ձեր ի մեղաց և անարատ կուսութեամբ մնացէք՝ մինչ արժանի լինիք առնուլ զպսակն աւրհնութեան, որպէսզի աստուծոյ նուէր լիցին անձինք ձեր և մի սատանայ նման գայլոյ գիշատեալ պատառեսցէ զձեզ:

ե. Հինգերորդ. յետ առնելոյ զպսակն աւրհնութեան և միաւորիլ սուրբ ամուսնութեամբ ընդ կողակցին[62] ձերոյ, զոր[63] յաստուծոյ պատշաճեցաւ, սուրբ պահեցէք զանձինս ձեր յաւտար և ի պիղծ անկողնոյ[64], զի մի զպսակն[65] աւրհնութեան կորուսանէք, և անկանիք[66] յանէծս սատակիչս, և զրկիք ի քրիստոնէութեան անուանէ՝ շուներ կոչելով վասն շնութեան մեղացն:

զ. Վեցերորդ. յամենայն աւր[67] երեք անգամ յաղաւթս կացէք՝ ի լուսանալ աւուրն և ի ժամ ուտելոյ հացին և երեկոյն՝[68] ի ժամ քնոյն: Յամէն ժամ ԺԲ. (12) ծունր այր մարդն և Ի. (20) ծունր[69] կին մարդն. և որ այլ աւելի կարէ՝ զայն իւր հոգւոյն[70] զաւրութիւնն և սէրն գիտէ, զոր առ աստուած ունի:

է. Շաբաթն[71] աւրն և կիրակէն[72] անպատճառ յեկեղեցին երթայք, որ զաւետարանին ձայնն լսէք ու[73] Քրիստոսի ձայնին լինիք արժանի, և զպատարագն տեսանելով զՔրիստոս տեսանէք:

---

[45] BC որ: [46] B ուր: [47] C առաջինն: [48] A ասացուք: [49] A այս աստուածային: [50] AB աւրէնքս, [51] A աղայահասակ: [52] A մանգունք: [53] AB միաբանիք: [54] AB զծնաւղսն: [55] A ետ: [56] B ձեզ: [57] B ի ծերութեան: [58] B լինիք: [59] B ծնաւղսն, C ծնաւղն: [60] C քահանային: [61] B զի չիք: [62] C կողակիցն: [63] C որ: [64] A պեղծ անկողնոյ: [65] AB պսակն: [66] A անկանիք: [67] B յաւրն փխ յամենայն աւր: [68] AB երեկուանն: [69] A ծունր չիք: [70] AB հոգոյն: [71] AB շաբաթ: [72] C կիրակէ աւրն: [73] AB լսելով փխ լսէք ու:

բ. Յամենայն կիրակի[74] զշաբաթուն[75] յանցանքն խոստովանեցէք և ի խ. (40) աւուր Հետ մի Հաղորդեցէք. և յամենայն[76] տէրունական տաւն յեկեղեցին ժողովեցէք և զխորՀուրդ տաւնին Հասկացիք. և զկիրակին ի բան անելոյ սուրբ պահեցէք։

[թ.] Զերանն, որ աստուծոյ անուանն խոստովանող է և Հաղորդական[77] ի քիչոցաց սուրբ պահեցէք և յամենայն այանցի խաւսից, և մի զաստուծոյ ստեղծուածն զլեզուն սատանայի առնէք գործի։

[ժ.] Զամենայն սպասաւորս ձեր ամրացուցէք եկեղեցին[78] աստուծոյ. զաչքն՝ ի յարատ Հայելոյ, զականջն՝ ի չար և ի մեղաց լսելոյ, զձեռն՝ ի զրկելոյ և ի գողանալոյ և ի Հարկանելոյ, և զոտսն՝ ի մեղս ընթանալոյ[79]։ Այլ այսպէս արարէք. աչաւք զաստուծոյ զեղեցիկ արարածս տեսէք, և բերանով զարարիչն աւրՀնեցէք, ականջով զպատուիրանս նորա լսեցէք, ձեռաւք յողորմութիւն և յաշխատութիւն գործոյ և յողորմութիւն աղքատաց բարեգործիցէք[80], և զոտս ի չար խորՀրդոց սրբեցէք[81]։

Եւ այս ամենայն ունէր իւր անձին աւրէնք և[82] զգուշութիւն յաստուածային Հրամանացն և ի գրոց սրբոց։

Բ. Իսկ երկրորդն, որ եղբարցն առնէն և[83] վասն սիրոյն աստուծոյ զեղբայրսիրութիւն[84] կատարեն՝ այս է.

ա. Վասն զի աշխարՀս այս ծով է և մարդիկ աշէկածին ի սմա պէս պէս պատաՀմամբ գործոց. և թէ[85] որ յեղբայրութենէս ի փորձութիւն մարդկան անկանիցի[86] և ի բանտարգաց[87] նեղիցի, ամենայն եղբայրքն ջան եդեալ Հանցեն[88] զնա ի Հասեալ[89] վշտացն, զի որ եղբայր եղև մեզ. Քրիստոս ասացէ՝ «Ի բանդի էի և եկիք առ իս»։

բ. Եւ եթէ որ ի փորձութիւն մեղաց անկեալ[90] ի ձեռս սատանայի մատնեսցի՝ ամենայն եղբարքն աղաւթիւք և բարի խրատով և աղաւթանաւք, այլ և սաստիւք և ամենայն Հնարիւք՝ ազատեսցեն զանկեալն[91] ի ծառայութիւն մեղաց և Քրիստոսի ընծայեսցեն, նմանեալ այնմ, որ գթացաւ ի վերայ անկելոյն[92] ի ձեռս աւազակացն[93]։

գ. Եւ թէ[94] որ յաղքատութիւն անկանիցի[95] և ի չքաւորութիւն մարմնոյ, այլ եղբարքն ըստ կարողութեան և ըստ ուժոյ աւգնեսցեն, և աղքատ եղբարն աւգնելով՝ աստուծոյ փոխ տացեն, որ Հազարապատիկ վճարէ յայսմ աշխարՀի և ի Հանդերձեալն զկեանսն յաւիտենականս[96] պարգևեսցէ։

[դ.] Եւ թէ[97] որ ի տկարութիւն և ի ցաւ Հիւանդութեան մարմնոյ անկանիցի[98] յամենայն այր եղբայրութենէն[99] ի տեսութիւն գնասցեն և զՀիւանդացեալն մխիթարեսցեն, և դեղով և բժշկով ձեռնտու լիցին, որպէսզի լուիցեն ի Քրիստոսէ, թէ[100] «Հիւանդ էի և տեսէք զիս»։

[ե.] Եւ թէ[101] ումեք այր վախճանին Հասցէ և փոխեսցի յանցաւոր կենացս՝ ամենայն եղբարքն զմարմինն պատուով ի գերեզման[102] տանիցեն[103],

---

[74] C կիրակէ Ակւրակէք: [75] B զշաբթաւն: [76] B ամէն: [77] C և Հաղորդական չիք: [78] AB եկեղեցին: [79] AB և զոտսն ի մեղս ընթանալոյ չիք: [80] AB բարէգործեցէք: [81] C սրբեցէք: [82] C աւրէնք և չիք: [83] B և չիք: [84] B զեղբայրութիւն: [85] AB եթէ փխ և թէ: [86] A անդանիցի: [87] A և բանտարգաց, [88] B Հանիցեն: [89] AB Հասանելոյ: [90] A զանկեալն: [91] A անկեալ: [92] A անկելոյն: [93] AB աւազակաց: [94] AB եթէ: [95] AB անկցի: [96] C յաւիտենականն: [97] AB եթէ: [98] A անկցի: [99] B յամէն այր առաջ եղբայրքն փխ յամենայն... եղբայրութենէն: [100] AB եթէ: [101] AB եթէ: [102] A գերեզմանի: [103] B թաղեսցին ի գերեզմանի։

որպէս վայել է, և զհոգն հոգոյն տացեն. և ամէն եղբայր[104] մին առ պատարագ տայ[105] առնել յանուն վախճանելոյն։

Եւ այս սահման է, զոր եղբարքն միմեանց առնեն, եթէ մեռանի և[106] եթէ հիւանդ լիցի եղբայրն՝ սիրով և հաւատով ի մէջ իւրեանց համարեսցին։

Իսկ երրորդ գլուխն այն է[107], որ և այլոց բարի արասցեն, որ գան ի հեռաւոր աշխարհաց, և կամ ի սոցանէ գնան յայլ աշխարհ՝ ազատին և ազատեցուցանեն։

Եթէ վարդապետ եկեսցէ յայլ[108] աշխարհէ՝ գլխաւորք եղբարցն ի տեսութիւն երթիցեն, և պատուեսցեն զնա, և շահեսցին ի վարդապետական բանիցն, և ժողովեսցին առ նա ի քարոզութիւն սուրբ գրոց. և ի գնալն՝ յուղարկեսցեն[109] զնա սիրով, և ըստ մարմնոյ պիտոյիցն ըստ կարին տացեն հոգևոր սերմանողին զմարմնաւոր պտղաբերութիւնն։ Այնպէս և եպիսկոպոսաց արասցեն. նոյնպէս վանականաց և աղաւթարար եղբարցն և ճգնաւորաց ասպնջական և հանգուցիչք[110] լիցին։

Եւ խաղաղարարք լինիցին[111] եղբարքս մեր ի մէջ աշխարհի. ընդ ամենայն ազգ մարդկան սիրով անցցեն զասել և զլսել, որ յամենայն ազգէ իմաստունք լիցին՝ մեծարեսցեն և յիմաստութենէն շահիցին[112] առանց հակառակութեան, հեզ բարուք, հանդարտ գնացիւք, պարկեշտ կացուք[113], իբրև զգահեկան ոսկի ի մէջ աղմոյ աշխարհիս անարատ և յստակ[114] մնալով. իբրև զլոյս արևու ի մէջ[115] գարշահոտութեանց պայծառ մնալով՝ յիւրեանց բարոյն տալ այլոց՝ որպէս արեգական[116] լոյս, և յայլոց[117] պղծութեանց ոչ ստանիլ, որպէս և արեգակն ոչ առնու յայլոց պղծութեանց։

Արդ, դուք պատուական եղբարք, այսպիսի արինաւք զարդարեսցէք զանձինս ձեր, զի լինիցիք միմեանց որպէս զպարիսպ ամուր, զի որպէս բազմութիւն քարանց ժողովեալ ի մի տեղի պարիսպ ամրութեան և պահպանութեան է[118] քաղաքի, այնպէս և դուք իբրև զկենդանի քարինս սիրովն աստուծոյ միաբանեալ՝ անառիկ ամրութեամբ կացէք ի հաստատութիւն։ Եւ որպէս դրախտ բազում տնկաւք զարդարի, այնպէս և դուք եղերուք իբրև զդրախտ աստուծոյ բազմաճաշակ պտղով զարդարեալ և որպէս բուրաստան անուշահոտ ծաղկաւք լիացեալ[119]։ Եւ զորաւրինակ թագ թագաւորի ի յականց և ի մարգարտոց և յականց պատուականաց յաւրինի, նոյնպէս և դուք թագ պարծանաց լերուք[120] գլխոյն մերոյ Քրիստոսի, և իւրաքանչիւր զիւր գեղեցիկ գործս փայլեցէք իբրև ական լուսատու, և որպէս ակունքն յականն շարեալ[121] միանան, նոյնպէս և դուք յամրիծ[122] հաւատն և յանկեղծ սէրն յարմարեալ[123] գեղեցիկ և պայծառ լուսով փայլեցէք, եղերուք մաւր ձերոյ եկեղեցւոյ կենդանի զանձ և պարծելի որդիք, եթէ ուտիցէք և եթէ ըմպիցէք[124] զամենայն ի փառս աստուծոյ արասջիք։

Արդ, որ սիրէ զեղբայրութիւնս զայս և խառնի ի միաբանութիւն սոցա, պահեսցէ նախ զաւրէնս զայս և զսահման եղբարցս՝ գրեսցի նա ի գիր միաբանութեանս և Քրիստոս գրեսցէ ի դպրութիւն կենաց, իսկ շնացողն և յիշոցնաւոն և այլ զանազան մեղաւք վարեալն մի՛ կացցէ ի գրի աստ. իսկ որ ապի-

[104] B եղբայրք: [105] B տան: [106] B և չիք: [107] B այս է: [108] B յայլ չիք: [109] B ուղարկեսցին: [110] B հանգուցիչ, C հանկուցիչ: [111] AB լինին: [112] AB շահեսցին: [113] B պարկեշտ կացուք: [114] B յստակ: [115] A արևու ի մէջ չիք: [116] A արեգակն: [117] Այստեղ, թերթերի կորստի պատճառով, ընդհատվում է C ձեռագիրը: [118] A պահապան ամուր է: [119] B պտղովք լցեալ փխ. ծաղկաւք լիացեալ: [120] B եղերուք: [121] A շարել: [122] B յանրիծ: [123] A յարմարել: [124] A ըմպիցէք:

*հապահքն են՝ սիրով զմիմեանս շահեցին։ Ասաց եղբայրն[125] քաղցրութեամբ[126] խրատեսցէ, և կրսերն հնազանդութեամբ[127] լուիցէ, որ գիտունն է մի հպարտասցի և որ տխմարն է մի յուսահատեսցի, այլ իբրև զՔրիստոսի անդամ միմեանց խնամ տանիցեն, զմեծն և զիմաստունն պատուեսցեն և զփոքրն և զանուսումն գթով խրատեսցեն։*

*Տանին զլուծն և քաղաքին մեծն յամենայն ժամ ի վարդապետաց ուսցին և զայլոն ապաշեցուցեն[128], և զամենայն բան բարի խրատով զկնաւորացն արասցեն։*

Л. С. ХАЧИКЯН

## УСТАВ «БРАТСТВА» ГОРОДА ЕРЗЫНКИ (1280 г.)


### (Резюме)

В 1280 году в городе Ерзынке холостые армянские юноши и молодые люди, принадлежавшие к сословию купцов и ремесленников города, организовали «братство», для которого Иоанн Ерзынкаци—видный ученый и поэт того времени—написал «Устав и каноны».

Целью «братства» было общими усилиями оказывать сопротивление «насильникам» и «злым людям», помогать разорившимися товарищам, оказывать друг другу поддержку в различных вопросах экономической и социальной жизни. По своей структуре «братство» приближалось к воинской организации, низшее звено которой состояло из 10 членов, подчиненных десятнику. Из четырех таких звеньев состояло следующее подразделение, находившееся под главенством «сороканачальника». Делами организации ведал особый орган—«старшины братьев», под председательством «главы братства». Вся организация состояла из «старших» и «младших» членов.

Публикуя научно-сравнительный текст устава братства, составленный на основе сличения 3 рукописей Гос. Матенадарана, издатель в кратком предисловии говорит о подобных организациях, существовавших как в городах самой Армении (Ани, Ван, Карин), так и в зарубежных армянских поселениях (Кафа, Каменец-Подольский, Султаниэ, Язловец, Станислав и др.) и рассматривает ряд произведений средневековых армянских поэтов—Иоанна и Константина Ерзынкаци, а также безымянных певцов-гусанов, созданных по заказу молодых людей—членов указанных «братств» и отражающих их мироощущение, идеи и настроения.

Более подробную статью об уставе и самом «братстве» города Ерзынки издатель опубликовал в № 12 «Известий» АН АрмССР (общественные науки) за 1951 год.


---

[125] B *ասաց, գիտուն և իմաստուն եղբայրն։* [126] B *քաղցրութեամբ։* [127] B *կրսերն և անմիտն և տգէտն հնազանդութեամբ։* [128] B *ապաշեցուցեն։*

L. S. KHATCHIKIAN

## LE STATUT DE LA «CONFRERIE» DE LA VILLE D'ERZENKA (1280)

En 1280, adolescents et jeunes gens célibataires, issus de familles d'artisans et de commerçants arméniens de la ville d'Erzenka, s'organisèrent en «confrérie» dont le statut et les canons furent rédigés par Hovhannès Erzenkatsi, savant et poète réputé de l'époque.

La «confrérie» se donnait pour tâche de lutter contre «les malfaiteurs» et «les hommes méchants», d'aider les camarades ruinés et d'assurer à ses membres un soutien en toutes questions, sociales ou économiques. Par sa structure, la «confrérie» s'identifiait à une organisation militaire. Le groupe initial était formé de 10 membres et commandé par le «chef des dix». Ces groupes, réunis par quatre obéissaient au «chef des quarante». Les affaires étaient administrées par un organe spécial des «frères ainés» que présidait le «chef de la confrérie». Toute l'organisation se trouvait composée de «membres ainés» et de «membres cadets».

L'auteur qui nous fait connaître le texte comparé du statut de la confrérie, restitué après une analyse scientifique de 3 manuscrits conservés au Maténadaran, retrace en quelques mots, dans sa préface, l'histoire d'organistations semblables ayant existé dans les villes d'Arménie (Ani, Van, Karin) et dans les communautés arméniennes de l'étranger (Caffa, Kaménetz-Podolsk, Sultanié, Yazlovets, Stanislavov, etc.) tout en nous donnant un aperçu des oeuvres de Hovhannès Erzenkatsi et de Constantin Erzenkatsi, poètes arméniens du moyen âge, et des chansons de «koussans» composées à la demande des jeunes membres des «confréries» et inspirées des sentiments et idées de ces derniers.

Le statut de la confrérie d'Erzenka et la confrérie même ont fait l'objet d'un examen plus détaillé que l'auteur a publié dans le N° 12 de 1951 de la Série des Sciences sociales des «Teghegagir» de l'Académie des Sciences de la RSS d'Arménie.